Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 10 ՄԱՅԻՍ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78



# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Խ. ԴՐԱՄԲՅԱՆ

Մեքենաշինությունը հանդիսանում է տեխնիկական պրոգրեսի նյութական բազան, ծանր արդյունաբերության սիրտը: Արտադրության էլեկտրիֆիկացումը, մեքենայացումը, ավտոմատացումը, հսկայական պահանջներ են դնում մեքենաշինության արդյունաբերության առջև՝ նորագույն տեսակի մեքենաների, մեխանիզմների, սարքերի և ապարատների արտադրության ուղղությամբ: Ահա թե ինչու պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց արագ տեմպերով զարգացնել մեքենաշինությունը: Յոթնամյա պլանով նախատեսված է մեքենաշինության բոլոր ժամանակակից ճյուղերի և ամենից առաջ ծանր մեքենաշինության, սարքաշինության, ավտոմատիկայի և էլեկտրոնիկայի միջոցների արտադրության ավելի արագ զարգացում:

Մեր ռեսպուբլիկայում նույնպես բուռն թափով է զարգանալու մեքենաշինությունը։ Մեքենաշինության և մետաղամշակման բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 3,5 անգամ։ Մեքենաշինության համախառն արտադրանքի աճը հիմնականում նախատեսվում է ինչպես նոր ձեռնարկությունների կառուցման և շահագործման հաշվին, այնպես էլ գործող արտադրական կարողությունների ընդլայնման, հնացած սարքավորումների փոփոխման ու մոդեռնացման, տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման լայն բազայի վրա։ Մեքենաշինության առանձին ճյուղերի համախառն արտադրանքի աճը՝ 1965 թվականին կբնութագրվի հետևյալ կերպ։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը յոթնամյակում կաճի 3 անգամ, ռադիոտեխնիկական և սարքաշինական արդյունաբերությունը՝ 8,7 անգամ, հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերությունը՝ 7,4 անգամ և այլն։

1965 թվականին մեքենաշինության արտադրության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտա-



դրանքի մեջ 1958 թվականի համեմատությամբ բավական մեծ տոկոս կկազմի։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայում կկառուցվեն և գործող ձեռնարկությունների շարքը կմտնեն 10 խոշորագույն մեքենաշինական և հաստոցաշինական ձեռնարկություններ, որոնց կառուցման, ինչպես նաև եղած արտադրական տարածությունների ընդլայնման համար հատկացված է 747 միլիոն ռուբլի, որը 2,4 անգամ ավելի է, քան 1952—1958 թվականների ընթացքում կատարված կապիտալ ներդրումները։ Նշված ձեռնարկությունները շահագործման հանձնելով, ռեսպուբլիկայի մեքենաշինությունը կհարստանա բոլորովին նոր և չափազանց կարևոր տեսակների բարձր ճշտության ու բարձր արտադրողականության հաստոցներով և մեքենաներով։

Յոթնամյակի նորակառույցներից է Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանը, որտեղ կարտադրվի ունիվերսալ ֆրեզերային հաստոցներ։ Այժմ ավարտված է գործարանի գլխավոր կորպուսի շինարարությունը և ընթացիկ տարվա առաջին եռամսյակից հանձնված է շահագործման։ Գործարանի կոլեկտիվը իր արտադրանքի առաջին նմուշները տվեց Հայաստանի Կոմպար-

տիայի արտահերթ XX համագումարի բաց-
ման առթիվ։

Լենինականի հղկման հաստոցների գոր-
ծարանում նախատեսվում է, երեք մոդելների
բարձր ճշտության հաստոցների արտադրու-
թյուն, որոնք նախատեսված են կոնաձև,
գլանաձև մակերևույթների արտաքին և ներ-
քին, ինչպես և ճակատային մակերևույթների
հղկման համար։ Բոլոր երեք մոդելի հաս-
տոցներն էլ սարքավորված պետք է լինեն
հատուկ ավտոմատիկ հարմարանքներով։
Ընթացիկ տարում կոլեկտիվը տվեց իր ար-
տադրանքի առաջին նմուշը, որը բարձր
գնահատականի է արժանացել։ Նախատես-
ված է Լուսավանում սկսել միանգամայն նոր
կոնստրուկցիայի ներտաշման հաստոցների
արտադրությունը։ Ներկայումս ավարտված
են ձուլման և մեխանիկական հավաքման
կորպուսների շինարարությունը, որտեղ
սկսված է, նոր սարքավորումների տեղա-
դրումը։

Յոթնամյակի ընթացքում շահագործման
կհանձնվի Կիրովականի ճշգրիտ հաստոց-
ների գործարանը, որը կարտադրի սեղանի
տիպի ճշգրիտ խառատային գայլիկոնող և
այլ մոդելների հաստոցներ, որոնք հիմնա-
կանում կօգտագործվեն ճշգրիտ մեքենաշի-



նության համար։ Մոտավոր պատկերացում
ունենալու համար նշենք, որ սեղանի երկլի-
կային ուղղաձիգ գայլիկոնող հաստոցը, որի
խլիկը կատարելու է մինչև 12.000 պտույտ
մեկ րոպեում, կունենա մինչև 40 կգ քաշ։
Այս նույն գործարանում պետք է արտա-
դրվեն նաև երկու նոր տեսակի հաստոց, ո-
րոնք նախատեսվում են ժամացույցային և
գործիքաշինական արդյունաբերության խո-
շոր սերիական արտադրության մեջ գործա-
դրելու համար։ Այս գործարանի նախագծ-
ման աշխատանքները կատարվում է ռես-
պուբլիկայի մասնագետների ուժերով, որի
հաջող ավարտումը հնարավորություն կտա
ապագայում մեքենաշինական գործարան-
ների գծով բոլոր կոմպլեքսային նախագծ-
ման աշխատանքները կատարել ռեսպուբ-
լիկայի ուժերով և ոչ թե ռեսպուբլիկայից
դուրս։

Նշված գործարաններից յուրաքանչյուրի
կարողությունը գերազանցելու է Երևանի
Ձերժինսկու անվան հաստոցաշինական
գործարանի ներկայումս ունեցած կարո-
ղությանը 2—2,5 անգամ։

Յոթնամյակում բացի նշված նոր գործա-
րանների կառուցումից, մեծ աշխատանք է
նախատեսվում կատարել ներկայումս գոր-

ծող ձեռնարկությունների հզորությունները ուժեղացնելու և հաստոցների նորագույն մոդելներ թողարկելու ուղղությամբ։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը հենց այս տարի սերիական արտադրության համար յուրացրել է խառատային հաստոցի առավել կատարելագործված կոնստրուկցիա։ 1965 թվականին նախատեսված է գործարանի կարողությունը ավելացնել 2—2,5 անգամ։

Հոկտեմբերյանի գործարանի կոլեկտիվի և հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոյի ուժերով մեծ աշխատանք է տարվում մեկ իլիկանի ուղղաձիգ զայլիկոնող հաստոցի հնացած կոնստրուկցիան նորով փոխարինելու ուղղությամբ։ Գործարանը արդեն տվել է իր նոր արտադրանքի առաջին նմուշը, որը ներկայացված է պետական կոմիսիային փորձարկման համար։

Տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ խոշոր աշխատանք է կատարված նաև Կոմպրեսորների, Փոքր հիդրոտուրբինների, Հայէլեկտրո գործարանների կոլեկտիվների կողմից։ 1965 թվականին ռեսպուբլիկայի մեքենաշինությունը և հաստոցաշինությունը հաստոցների արտադրության քանակով դուրս է գալու միության առաջավոր ռես-



պուբլիկաների շարքը և գրավելու է չորրորդ տեղը ՍՍՌՄ-ում։

Մեքենաշինության և հաստոցաշինության արտադրության մեջ 1965 թվականին կաշխատեն մոտ 13.000 բանվոր-ծառայողներ և մեծ թվով ինժեներա-տեխնիկական աշխատողներ, այսինքն 2,5 անգամ ավելի, քան 1957 թվականին։

Հաստոցաշինության և մեքենաշինության լայն զարգացումը ռեսպուբլիկայում անհրաժեշտ է դարձնում ստեղծել մի շարք մասնագիտացված նոր գործարաններ, որոնք օժտված են լինելու հատուկ գործիքների, կռվածքի և ուրիշ շատ կարևորագույն մասերի կենտրոնացված արտադրությամբ։

Երևանի շարժիչների վերանորոգման գործարանի բազայի վրա կառուցվում է հիդրոհաղորդակների նոր գործարան, որը երկրին կտա բազմաթիվ հիդրավլիկական սարքեր։ Գործարանի արտադրանքը բավարարելու է ոչ միայն Հայաստանի ձեռնարկություններին, այլև Վրաստանի, Ադրբեջանի, և Հյուսիսային Կովկասի հաստոցաշինության ձեռնարկություններին։ Գործարանը պետք է թողարկի զանազան տիպի պոմպեր, հիդրոպանելներ, ապահովիչ փականներ և այլն։

Ձուլածոյի և գունավոր ձուլվածքների կենտ-

րոնացված արտադրություն ստեղծելու նպատակով, Լուսավանում կառուցվում է միության մեջ խոշորագույն գործարան, որը ձուլվածքով պետք է ապահովի ինչպես սեփական, այնպես էլ Երևանի մեքենաշինական ձեռնարկությունները։ Ձուլման խոշոր գործարան է նախատեսվում կառուցել նաև Լենինականում, որը անհրաժեշտ քանակությամբ ձուլվածք կտա Լենինականի, Հոկտեմբերյանի, Կիրովականի մեքենաշինական գործարաններին և մյուս օբյեկտներին։ Այս երկու խոշորագույն ձուլման գործարանների կառուցումով ռեսպուբլիկայում ստեղծվում է ձուլվածքի մեքենայացված արտադրության երկու կենտրոն, որը կվերացնի մեզ մոտ բազմաթիվ մանր ու տարբերայնորեն ստեղծված, ոչ մեքենայացված ձուլման ցեխերը։

Հաստոցաշինության զարգացման հարցերի հետ միաժամանակ յոթնամյակում խոշոր աճ է նախատեսվում ռեսպուբլիկայի ընդհանուր մեքենաշինության ուղղությամբ։ Երևանի ավտոպահեստամասերի գործարանի կողմից պահեստամասերի թողարկումը պետք է 1965 թվականին հասցվի 150 միլիոն ռուբլու, ընթացիկ տարվա 44,5 միլիոն ռուբլու դիմաց։ Նախատեսվում է զգա-



լի չափով ընդլայնել թողարկվող արտադրանքի նոմենկլատուրան և առանձին մասերի արտադրությունից հիմնականում անցնել առանձին ագրեգատների ու հանգույցների կոմպլեքսային արտադրությանը։

Զգալի չափով ընդլայնվում է կոմպրեսորների արտադրությունը, որը 1965 թվականին կաճի մոտ 3 անգամ։ Գործարանի կոլեկտիվը գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալի համապատասխան բաժնի հետ աշխատանք են կատարում ռեսպուբլիկայում ազատորեն շարժվող մխոցներով շարժիչներ ունեցող կոմբինացված գազատուրբինային տեղակայումների արտադրությունը կազմակերպելու ուղղությամբ։

Ընթացիկ տարվա սկզբին գործարանի կոլեկտիվը տվեց այդ շարժիչի առաջին և հաջող նմուշը։ Առաջիկա երկու երեք տարում միության մեջ առաջին անգամ մեզ մոտ կկազմակերպվի ազատ շարժվող մխոցներով գազատուրբինային տեղակայումների մասսայական արտադրությունը։

Այսպիսով 1959—1965 թվականների ընթացքում մեր ռեսպուբլիկայում կստեղծվի բարձր ճշտության որակյալ մեքենաշինություն և հաստոցաշինություն։

———

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԿԱՇԱՌԱԿԵՐՈՒԹՅԱՆ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ՄԱՍԻՆ

Դոցենտ ԱՐՇ. ԹՈՎՄԱՍՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին, պահանջում է հատուկ ուշադրություն դարձնել մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների և ամենից առաջ այնպիսի խայտառակ երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու վրա, ինչպես արհամարհանքն է հասարակական աշխատանքի և կարգապահության նկատմամբ, սոցիալիստական սեփականության հափշտակությունը, հարբեցողությունը, խուլիգանությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան։

Մեր մեծ Հայրենիքը թևակոխել է իր զար-



գացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Ոգեշնչված հարազատ Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության որոշումներով մեր երկրի աշխատավորները ջանք չեն խնայում կոմունիստական հասարակության կառուցման համար։

Ինքնին հասկանալի է, որ կոմունիզմ կառուցող մեր երկրում առանձին մարդկանց կողմից կատարվող հանցագործությունները միանգամայն անհանդուրժելի են։ Մարդասպանն ու խուլիգանը, կողոպտիչն ու գրպարտիչը, կաշառակերն ու սպեկուլյանտը տեղ չունեն այդ հասարակության մեջ։ Նրանց նկատմամբ պետք է կիրառվեն անողոք պատիժներ։ Նրանք պետք է արժանանան հասարակական արգահատանքի և համընդհանուր ատելության։

Իր բազմաթիվ աշխատությունների մեջ Վ. Ի. Լենինը ընդգծել է հանցավոր երևույթների՝ այդ թվում կաշառակերության մեծ վտանգավորությունը, և պահանջել վճռական միջոցների դիմել հանցագործ տարրերի դեմ։ Դեռևս Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի առաջին ամիսներին մատնացույց անելով, որ մեր երկրում կատարվող քրեական

հանցագործությունները հին հասարակու-
թյան կազմալուծված տարրերի գործունեու-
թյան արտահայտություններն են, Վ. Ի.
Լենինը պահանջում էր երկաթե ձեռքով
պատժել այդ տարրերին. «... կազմալուծ-
ման տարրերն «իրենց ցույց տալ» չեն կա-
րող այլ կերպ, քան հանցագործությունների,
խուլիգանության, կաշառքի, սպեկուլյա-
ցիայի, ամեն տեսակ այլանդակությունների
ավելացումով: Այդ բանը հաղթահարելու
համար հարկավոր է ժամանակ և հարկա-
վոր է երկաթե ձեռք»,— ասում էր Վ. Ի. Լե-
նինը: Նա մատնանշում էր, որ պրոլետա-
րիատի դիկտատուրան «...երկաթե իշխա-
նություն է, ռևոլյուցիոնորեն համարձակ ու
արագ, անխնա՝ ինչպես շահագործողներին,
նույնպես և խուլիգաններին ճնշելու գոր-
ծում»: Ահա թե ինչպես էր դրվում քրեական
հանցագործների պատժելիության հարցը մեծ
առաջնորդի մոտ:

Սակայն, կաշառակերության և նրա դեմ
մղվող պայքարի հարցը ամենից հաճախ էր
զբաղեցնում Վ. Ի. Լենինին, և դա միանգա-
մայն հասկանալի պատճառով: Բուրժուական
հասարակության մեջ այդ արարքը հրեշա-
վոր չափեր էր ընդունել: Նախառևոլյուցիոն
Ռուսաստանում այն փաստորեն օրինակա-



նացված էր: Ցարական կառավարության ա-
մենաստորին աստիճանավորից մինչև ամե-
նաբարձր աստիճանավորը պետական ծա-
ռայության վրա նայում էր որպես կաշառքով
հարստություն կուտակելու աղբյուրի վրա:
Այդ աստիճանավորները կողոպտում էին աշ-
խատավորներին: Կաշառակերությունը հին
հասարակության անբուժելի ախտերից մեկն
էր, որն իրեն զգալ էր տալիս տակավին քա-
ղաքացիական կռիվների, տնտեսական քայ-
քայվածության ու սովի ճիրաններում գտնվող
նոր հասարակության մեջ:

Այսպես էր դրությունը, և այդ դրության
վրա չէր կարող ուշադրություն չդարձնել մեծ
Լենինը:

Ընդգծելով, որ սովետական կարգերում
կաշառակերությունը կեղտոտ և միանգա-
մայն անհանդուրժելի երևույթ է, Վ. Ի. Լենի-
նը այդ արարքը դասում էր պետական
բարձր վտանգավորություն ներկայացնող
հանցագործությունների թվին և գտնում, որ
նման արարք կատարողները պետք է պա-
տժվեն ռևոլյուցիոն ժամանակվա օրենքների
ամբողջ խստությամբ: Նա պահանջում էր
ստեղծել այնպիսի դատարաններ, «...որոնք
իսկապես արագ են աշխատում և իսկապես
ռևոլյուցիոնորեն անողոք են կոնտրռևոլյու-

ցիոներների, կաշառակերների ու կաշառատուների նկատմամբ, կարգապահության խախտողների նկատմամբ»։

Վ. Ի. Լենինը մատնացույց էր անում, որ սովետական մարդու առջև, կոմունիստի առջև, երեք գլխավոր թշնամիներ են կանգնած. առաջին թշնամին կոմունիստական ամբարտավանությունն է, երկրորդը՝ անգրագիտությունը և երրորդը՝ կաշառքը։ Այսպես դիպուկ ու շեշտակի կերպով հարցը դնելով, նա շարունակում էր. «...եթե կա մի այնպիսի երևույթ, ինչպիսին կաշառքն է, եթե կաշառքը հնարավոր է, ապա քաղաքականության մասին խոսք չի կարող լինել։ Այստեղ քաղաքականությանը մերձեցում անգամ չկա, այստեղ չի կարելի քաղաքականություն կենսագործել, որովհետև ձեռնարկած բոլոր միջոցները կախված կմնան օդի մեջ և բացարձակապես ոչ մի հետևանքի չեն հասնի։ Օրենքի հետևանքն ավելի վատ կլինի, եթե օրենքը գործնականապես կիրառվի կաշառքի թույլատրելիության և տարածվածության պայմաններում։ Այսպիսի պայմաններում չի կարելի ոչ մի քաղաքականություն իրագործել, այստեղ չկա այն հիմնական պայմանը, որ կարելի լինի քաղաքականությամբ զբաղվել»։ Այսպես էր բնութագրվում կաշառակե-



րության դասակարգային-հասարակական վտանգավորությունը Վ. Ի. Լենինի կողմից 1921 թվականի վերջերին, այսինքն այն ժամանակ, երբ Սովետական պետությունը նոր էր միայն ոտք դրել երկրի տնտեսության վերականգնման խաղաղ աշխատանքի ժամանակաշրջանի շեմքը։

Ընդգծելով կաշառակերության խոշոր վտանգավորությունն ու նոր հասարակական հարաբերությունների հետ նրա անհամատեղելի լինելը, Վ. Ի. Լենինը դրա հետ միասին հետևողականորեն պահանջում էր անողոք լինել նաև այն պաշտոնատար անձանց նկատմամբ, ովքեր վնասակար բարեհոգություն են ցուցաբերում դեպի կաշառակերները, իրենց այդ վարքագծով փաստորեն թևավորում են նրանց։ Հայտնի է հետևյալ փաստը. 1918 թվականի մայիսի 2-ին Մոսկվայի դատարաններից մեկը քննելով կաշառակերության համար Մոսկվայի հետաքննող կոլեգիայի չորս աշխատակիցների նկատմամբ եղած քրեական գործը, ապացուցեց կատարված հանցագործությունը, այսինքն՝ նրանց մեղավոր ճանաչեց կաշառակերության մեջ, բայց ցուցաբերելով ավելորդ բարեհոգություն ու մեղմություն, նրանց բոլորին էլ դատապարտեց խիստ

մեղմ պատիժների՝ վեցական ամսվա բանտարկության։ Իմանալով այդ մասին Վ. Ի. Լենինը անմիջապես միջամտեց գործին։ Դեպքից ընդամենը մեկ օր հետո նա ՌԿՊ-ի Կենտկոմին գրեց հետևյալ երկտողը. «Խնդրում եմ օրակարգում դնել պարտիայից նրա այն անդամներին հեռացնելու հարցը, որոնք կաշառակերների գործով դատավորներ լինելով... ապացուցված և նրանց կողմից խոստովանված կաշառքի առկայության դեպքում սահմանափակվել են 1/2 տարվա բանտարկության դատավճռով։

Կաշառակերներին գնդակահարելու փոխարեն այդպիսի ծաղրական թույլ և մեղմ դատավճիռներ կայացնելը խայտառակ վարմունք է կոմունիստի և ռևոլյուցիոների համար։ Նման ընկերներին պետք է հետապընդել հասարակական կարծիքի դատարանով և հեռացնել պարտիայից, որովհետև նրանց տեղը կերենսկիների կամ մարտովների կողքին է և ոչ թե ռևոլյուցիոներ-կոմունիստների կողքին»։ Մի քանի օր հետո ««Ձախ» երեխայության և մանրբուրժուականության մասին» իր հայտնի բրոշյուրում անդրադառնալով նույն այդ հարցին Վ. Ի. Լենինը այս անգամ է՛լ ավելի ընդհանուր և ամբողջական ձևով նշում էր, որ «... բավա-



կանաչափ խստություն չկա դատարաններում, որոնք կաշառակերներին գնդակահարելու փոխարեն, նրանց նկատմամբ նշանակում են կիսամյա բանտարկություն»։ Վ. Ի. Լենինը այսպես հետևողական կերպով էր դնում կաշառակերների և նրանց նկատմամբ բարեհոգի վերաբերմունք ցուցաբերողների դեմ տարվող պայքարի հարցը ոչ միայն այն պատճառով, որ այդ արարքը ինքըստինքյան վերցրած մի կեղտոտ երևույթ էր, որ սոցիալիստական հասարակական հարաբերությունների պայմաններում այն միանգամայն անհանդուրժելի ու խորթ արարք էր, այլ նախ և առաջ այն պատճառով, որ նրա թողտվության դեպքում փաստորեն անհնար էր դառնում ռևոլյուցիոն քաղաքականության անցկացումը, անհնար էր դառնում օրենքի կիրառման և օրինականության պահպանման գործի բուն ընթացքը։

Վ. Ի. Լենինը առանձին ջանք գործադրեց կաշառակերության և նրան առնչվող հանցանքների՝ կաշառատվության, կաշառակերության միջամտության և այլ նման արարքների դեմ ռացիոնալ պայքար կազմակերպելու նպատակով անհրաժեշտ օրենքներ ստեղծելու ուղղությամբ։ Նկատելով նման օրենքների բացակայությունը, 1918



թվականի մայիսի սկզբներին նա ՌՍՖՍՌ այն ժամանակվա արդարադատության ժողովրդական կոմիսար Դ. Ի. Կուրսկուն կարգադրում է. «Անհրաժեշտ է իսկույն ևեթ, դեմոնստրատիվ արագությամբ, օրինագիծ մտցնել, որ կաշառքի համար (կաշառակերության, կաշառատվության, կաշառակերության միջամտության համար և այլն և այլն)

պատիժը պետք է լինի
ոչ պակաս

տասը տարվա բանտարկությունից և, բացի դրանից, տասը տարվա հարկադիր աշխատանքից»: Այս կարգադրության արդյունքը եղավ այն, որ նույն թվականի մայիսի 8-ին ՌՍՖՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկեց արդեն կազմված օրենքի նախագիծը և ընդունեց այն: Օրենքում նշվում էր, թե նույն պատիժներին են ենթակա ինչպես կաշառակերության մեջ մեղավոր անձինք, այնպես էլ պաշտոնատար անձանց կաշառք տալու գործում դրդողները, օժանդակողները և կաշառատվությանն առնչվող մյուս բոլոր անձինք: Օրենքներն ինքնըստինքյան դեռևս հանցագործությունների վերացման նախադրյալներ կամ երաշխիքներ լինել չեն կարող: Որպեսզի ցանկալի արդյունքը ըս-



տացվի, դրա համար պետք է գործը կազմակերպել այնպես, որ հանցագործությունները ժամանակին բացահայտվեն և հանցագործները անպայման պատժվեն: «Կարևորն այն չէ,— մի առիթով ասել է Վ. Ի. Լենինը,— որ հանցագործության համար ծանր պատիժ նշանակվի, այլ այն, որ հանցագործության ոչ մի դեպք առանց մերկացվելու չանցնի»:

Վ. Ի. Լենինը սովետական բոլոր մարդկանցից և այդ թվում ամենից առաջ կոմունիստներից անդադրում կերպով պահանջում էր սովորել օրենքներից օգտվել: Նա գտնում էր, որ սովետական ամեն մի քաղաքացի, ու նախ և առաջ ամեն մի կոմունիստ, պետք է ընդունակ լինի գործող օրենքները օգտագործել որպես կարող զենքեր հանցավոր երևույթների և դրանց թվում կաշառակերության հայտնաբերման ու լիկվիդացման գործում: Ահա թե ինչ ենք կարդում 1921 թվականի վերջերին նրա տված զեկուցումներից մեկում. «Սովետական օրենքները շատ լավ օրենքներ են,— ասում է Վ. Ի. Լենինը,— որովհետև բոլորին հնարավորություն են տալիս կռվելու բյուրոկրատիզմի ու ձգձգումների դեմ, մի հնարավորություն, որ ոչ մի կապիտալիստական պետության մեջ չեն

տալիս բանվորին և գյուղացուն։ Իսկ ի՞նչ, արդյոք օգտվում են այս հնարավորությունից։ Համարյա ոչ ոք։ Եվ ոչ միայն գյուղացին, այլ նույնիսկ կոմունիստների վիթխարի տոկոսը չի կարողանում օգտվել սովետական օրենքներից՝ ձգձգումների, բյուրոկրատիզմի կամ այնպիսի... երևույթի դեմ պայքարելու համար, ինչպիսին կաշառակերությունն է... Մեզանում կոմունիստների կեսից ոչ պակասը չի կարողանում պայքարել այս երևույթների դեմ, էլ չխոսելով այնպիսիների մասին, որոնք խանգարում են պայքարելուն»։

Որքան ժամանակակից և արդիական են հնչում մեծ առաջնորդի այս դիպուկ ու մոբիլիզացնող խոսքերը ներկայումս։ Չէ՞ որ հիմա էլ կան անհատ պաշտոնատար անձինք և դրանց թվում առանձին կոմունիստներ, որոնք ո՛չ միայն չեն օգտվում սովետական օրենքներից հանցագործությունների և այդ թվում կաշառակերության դեմ պայքարելու համար, այլև երբեմն իրենք են խանգարում այդ պայքարին։

Հանցագործությունների և այդ թվում կաշառակերության դեմ հաջող պայքարի նախապայմաններից մեկն էլ Վ. Ի. Լենինը համարում էր աշխատավոր մասսաների



բարձր գիտակցականությունն ու ակտիվությունը, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Դեռևս 1918 թվականի մայիսին նա գրում էր, թե «տասնյակ-հազարավոր ընտիր, առաջավոր, սոցիալիզմին նվիրված բանվորներ, որոնք ընդունակ չեն կաշառքի ու հափշտակության ենթարկվել, ընդունակ են ստեղծել երկաթյա ուժ ընդդեմ... սպեկուլյանտների, կողոպտիչների, կաշառակերների, կազմալուծիչների,— ահա թե ինչ է անհրաժեշտ»։ Միայն առաջավոր, գիտակից, անկաշառ քաղաքացիներն են ի վիճակի իսկական պայքար ծավալելու հանցագործությունների և այդ թվում կաշառակերության դեմ՝ ահա թե ինչի վրա է այստեղ շեշտը դնում Վ. Ի. Լենինը։ Մի այլ առիթով Վ. Ի. Լենինը կաշառակերությունը համարում է մի արարք, որով չարամտորեն պաշտպանվում է այն «...ինչ որ կործանում է բանվորների իշխանությունը...»։

Մեր երկրում գնալով հանցագործությունները լիկվիդացվում են։ Դրանք գտնվում են իրենց լիակատար լիկվիդացման նախօրեին, բայց նրանց իսպառ լիկվիդացման համար դեռևս անհրաժեշտ է համառ ու հետևողա-

կան աշխատանք, անհրաժեշտ են անդադրում ջանքեր։

Սրբությամբ կենսագործելով մեծ Լենինի ցուցումները, Կոմունիստական պարտիան խոշոր հաջողությունների է հասել երկրում կաշառակերությունն ու մյուս հանցագործությունները լիկվիդացնելու և սոցիալիստական օրինականությունն ամրապնդելու գործում։ Այժմ մեր երկրի բնակչության ճնշող մեծամասնությունը անձնվիրաբար աշխատում է ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում, ազնվաբար կատարում սովետական օրենքները և սոցիալիստական համակեցության կանոնները։

Կոմունիստական պարտիայի ցուցումներով միաժամանակ ուժեղ պայքար է ծավալվում հասարակական կարգի պահպանման համար։ Այդ նպատակով ստեղծված են կամավոր ժողովրդական դրուժինաներ, որոնք արդեն հաջողությամբ պահպանում են սովետական մարդկանց հանգիստ կյանքն ու աշխատանքը։

---



# ՈՐՔԱՆ ՇԱՏ ՇԻՆԱՆՅՈՒԹ, ԱՅՆՔԱՆ ՇԱՏ ԲՆԱԿԵԼԻ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆ

(Ագիտատոր Ս. ԿԱՐԱԽԱՆՅԱՆԻ զրույցը «Արթիկ-տուֆը յոթնամյակում» թեմայով)

Երկար սպասելու հարկ չեղավ։ Երբ աշխատանքի ընդմիջումին լեռնային վարպետ Սրապիոն Կարախանյանը եկավ Արթիկ-տուֆի հանքում, տուֆագործները, սովորականի նման, շրջապատեցին նրան։

— Դուք անցած զրույցի ժամանակ,— ասում է ագիտատորը,— խնդրեցիք պատմել հարազատ ձեռնարկության յոթնամյա խոնդիրների մասին։

Նա ծոցագրպանից հանեց նախօրոք կատարած գրառումները, հանքաշերտին ամրացրեց Արթիկ-տուֆի արտադրանքի աճն արտացոլող իր հետ վերցրած դիագրամաները և շարունակեց զրույցը։

— Կոլեկտիվում քիչ չեն այն բանվորները, որոնք հիշում են, թե 30 տարի առաջ ինչպիսի դժվարությամբ բացվեց առաջին հանքը։

Չկային անհրաժեշտ մեքենաներ ու սարքավորումներ, մարդիկ, որոնք դեռ նոր էին ցած դրել արորի մաճը, ծանոթ չէին լեռնային աշխատանքի տեխնիկային։ Հետո հանքերում երևացին ամերիկյան «Սամսոն» տիպի քար կտրող մի քանի մեքենաներ, որոնք մեր պայմաններում որոշիչ դեր չէին կատարում։ Ամբողջ աշխատանքը կատարվում էր ձեռքով, իսկ արտադրանքը սայլերով և ձիաքարշ վագոնիկներով հազիվ հասցվում էր կառամատույց։

— Հենց դրանից էլ գալիս էին դժբախտ դեպքերը,— ասում է հին բանվորներից մեկը։

— Իհարկե,— հաստատում է ագիտատորը,— առանց փորձի ու մեքենայի քարի հետ գործ ունենալը ամեն տեսակ անախորժությունների հետ էր կապված։ Ոչ միայն դժբախտ դեպքերի տեղիք էին տրվում, այլև չնայած պաշարի անսպառությանը, խիստ թանկ էր նստում արտադրանքը։

Հնգամյակների տարիներին երկրում ծավալված շինարարության մեծ աշխատանքի շնորհիվ, գնալով ընդարձակվեց տուֆի արտադրությունը, որի տեսակարար կշիռը այսօր մեծ տեղ է գրավում ռեսպուբլիկայի շինանյութեր արտադրող ձեռնարկությունների



մեջ։ Հանքերում մուտք է գործել հայրենի արտադրության հարուստ տեխնիկա՝ էքսկավատորներ, սկրեպերներ, բուլդոզերներ, քարհատ ագրեգատ, վերամբարձ և այլն։ Ձեռնարկության հետ աճել է տուֆագործների բազմամարդ կոլեկտիվը, որն ամեն տարի երկրին տալիս է հարյուր հազարավոր խորանարդ մետր արժեքավոր շինանյութեր՝ վարդագույն տուֆ և պեմզա։ Միայն անցյալ տարի այն հասավ ավելի քան կես միլիոն խորանարդ մետրի։ Մեր արտադրանքը հասնում է մինչև Սիբիր, Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Ադրբեջանի, Վրաստանի և եղբայրական այլ ռեսպուբլիկաների շատ քաղաքներ։ Արթիկի տուֆը անճանաչելիորեն կերպարանափոխել, վարդագույն զարդ է հագցրել մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանին։

Երկրին ավելի շատ շինանյութ տալու հետ միասին,— ասում է ագիտատորը, Արթիկտուֆը ապրում է տեխնիկական պրոգրես։ Հանքերում ու ցեխերում գործող տարբեր տեսակի հզոր մեքենաներն ու սարքավորումները կրում են Մոսկվայի, Ուրալի, Կիևի, Քութայիսիի, Սարատովի, Լենինգրադի, Բաքվի և այլ քաղաքների գործարանների մարկաները։ Եթե նման փոխադարձ համա-

գործակցություն չլիներ, մենք չէինք կարող մեկ հանքի դիմաց, այժմ ունենալ 14 խոշոր հանք, ինչպես նաև վերանորոգման, ավտոտրանսպորտի, մեխանիկական և այլ ցեխեր։

Այժմ անցնենք ձեզ ամենից շատ հետաքրքրող հարցին, թե ինչպիսին կլինի մեր ձեռնարկությունը յոթնամյակում,— շարունակում է ագիտատորը։— Ընթացիկ յոթնամյակում ձեռնարկությունում ավելի շատ փոփոխություններ կկատարվեն, քան եղել է նրա ամբողջ պատմության ընթացքում։ Եվ դա բնական է։ ՍՄԿԴ XXI համագումարի կողմից հաստատված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը նախատեսում են յոթնամյակում երկրում կառուցել 15 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ 7 միլիոն տուն։ Ինքնին հասկանալի է, որ այդ մեծ կանխագծումը հնարավոր չէ իրականացնել առանց շինանյութերի արտադրության զգալի ավելացման։ Դա նոր խնդիրներ է դնում նաև մեզ վրա։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանում է, թե ինչ խնդիրներ են դրված իրենց կոլեկտիվի առջև։ 1965 թվականին,— շարունակում է նա,— մեր արտադրանքի ծավալը կմեծանա երկու



անգամ՝ կես միլիոնից կհասնի ավելի քան մեկ միլիոն խորանարդ մետրի։ Այդքան շինանյութը բավական է Արթիկի նման մի քաղաք կառուցելու համար։ Անցած ամսին ձեռնարկությունում հիմք դրվեց յոթնամյակի առաջնեկներից մեկի՝ արհեստական տուֆաբլոկների գործարանի շինարարությանը։ Այդ խոշոր կառույցը, որի շինարարության համար հատկացված է 58 միլիոն ռուբլի և գրավելու է 25 հեկտար տարածություն, լրիվ շարք կմտնի 1962 թվականին, իսկ առաջին հերթը արտադրանք կտա եկող տարվա վերջերին։

— Տեսնում եք տուֆի մնացորդների այդ անսպառ պաշարները,— մատնացույց անելով հանքերի շրջակայքում բարձրացած բլուրները, շեշտում է ագիտատորը,— այդ բոլորը էժան հումք են արհեստական տուֆաբլոկներ պատրաստելու համար։ Բացի դրանից, արտադրանքի մնացորդների օգտագործումը թույլ կտա վերաշահագործման հանձնել նախկինում տեխնիկապես ճիշտ և լրիվ չօգտագործված մի շարք հանքեր։ Դրա հետ միասին, կբացվեն նոր հանքեր, կընդարձակվեն եղած արտադրական տարածությունները։

Ձեռնարկության հիմնական վերակառու-

ցումը գնալու է աշխատատար պրոցեսների հետագա կատարելագործման և մեքենայացման ուղղությամբ։ Նոր քարհատ ագրեգատների տեղադրումը հանքերում արդեն լավ արդյունք է տվել։ Այդ հանքերում ներկայումս ձեռքով քար չի հատվում, և քիչ բանվորական ուժով ավելի շատ արտադրանք է թողարկվում։ Առաջիկայում կմեքենայացվեն նաև մյուս մնացած հանքերը, ուր դեռևս գերակշռում է ձեռքի աշխատանքը։ Դա միաժամանակ կվերացնի շինարարության մեջ քարի հետագա մշակման անհրաժեշտությունը։ Մենք այժմ կատարելով մեծ ծախսումներ և զբաղեցնելով հսկայական քանակությամբ երկաթուղային վագոններ, շինարարական կազմակերպություններին ուղարկում ենք, ինչպես ասում են, կոպիտ ձևի քար։ Արմատավորելով կանոնավոր ձևի քար հատելու պրակտիկան, մենք կվերացնենք նշված թերությունները։ Հաշվումները ցույց են տվել, որ մեկ խորանարդ մետր անձև քարից ստացվում է 1,5 քառակուսի մետր պատ, իսկ մեքենայով հատված քարից՝ 3 քառակուսի մետր։

Ձեռնարկության մեքենայացման աշխատանքների զգալի մասը կկատարվի այս տարի և 1960 թվականին։ Արդեն տեղադր-



վում են Մոսկվայից վերջերս ստացված երկու նոր քարհատ ագրեգատներ։ Շարք կըմըտնեն նաև «Պետրիկա» կոչվող բարձր աստիճանային մեքենաներ, որոնք մեր պայմաններում կարող են հրաշալի արդյունք տալ։ Հայրենական արտադրության նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ, ձեռնարկությունը կարտադրի ցանկացած չափսի սրբատաշ որմնաքար և բլոկներ, որով կըբարձրանա աշխատանքի արտադրողականությունը, կիջնի արտադրանքի ինքնարժեքը։

Սկսած այս տարվանից մեծ աշխատանք է ձեռնարկվելու նաև շինաքարի բարձրման, և հանքաշերտերի նախապատրաստումը մեքենայացնելու ուղղությամբ։ Այդ գործը կկատարվի վերամբարձների և հատուկ սարքավորումների միջոցով։ Ձեռնարկության անընդմեջ աշխատանքն ապահովելու նպատակով բարձման կառամատույցներում և հանքերում պատրաստվում են աշտարակավոր խոշոր լուսարձակներ։

Վերջում ագիտատորը հանգամանորեն պատասխանելով ունկնդիրների հարցերին, նրանց ուշադրությունը բևեռեց սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման վրա։

Կ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՐԵՎՈՐ ՊՐՈԲԼԵՄ

Գ. ՌԱՍՍԱԴԻՆ

ՍՄԿԿ XXI համագումարում զինաթափման պրոբլեմը կոչվեց այսօրվա խնդիրների խնդիրը։ Եվ իրոք, առանց սպառազինությունների մրցավազքի դադարեցման, առանց ատոմային և ջրածնային զենքի փորձարկումների, արտադրության ու գործադրման արգելման աներևակայելի է միջազգային լարվածության իսկական վերացումը, անհնարին է կայուն և երկարատև խաղաղությունը, որին ծարավի են բոլոր ժողովուրդները։

Սպառազինությունների մրցավազքի ոգեշնչողներն ու կազմակերպիչները Արևմուտքի, առաջին հերթին ԱՄՆ-ի, ագրեսիվ մոնոպոլիստական շրջաններն են։ Մտքում համաշխարհային տիրապետության պլաններ կայացնելով, ԱՄՆ-ի կառավարող շրջանները երկրորդ համաշխարհային պատերազմի վերջանալուց անմիջապես հետո ռազ-



մական բլոկներ ստեղծելու, Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների դեմ ռազմական ավանտյուրաներ նախապատրաստելու կուրս վերցրին։

1949 թվականին կազմվեց Հյուսիս-ատլանտյան ռազմական բլոկը (ՆԱՏՕ), որի կազմի մեջ այժմ մտնում են տասնհինգ երկրներ։ Այս բլոկի հարվածող ուժը պետք է լինի Արևմտյան Գերմանիան, որտեղ այժմ արագացված թափով վերածնվում է ռազմական արդյունաբերական պոտենցիալը և կենդանի մնացած հիտլերյան գեներալների ու սպաների ղեկավարությամբ ձևավորվում է խոշոր բանակ։

Ավելի ուշ ԱՄՆ-ի հովանու ներքո ստեղծվեցին այնպիսի ագրեսիվ բլոկներ, ինչպես ՍԵԱՏՕ-ն և Բաղդադի պակտը, որոնք ըստ էության ՆԱՏՕ-ի շարունակությունն են և իրենց ազդեցությունը տարածում են Մերձավոր ու Միջին Արևելքի, ինչպես նաև Հարավ-Արևելյան Ասիայի շրջանների վրա։

Չբավարարվելով այս բլոկներով, ԱՄՆ-ը զանազան երկրների վզին երկկողմանի ռազմական համաձայնագրեր է փաթաթում, որպեսզի իր ռազմական-ստրատեգիական պլաններում ավելի լիովին օգտագործի ուրիշների տերիտորիաները, տնտեսական ռե-

սուրսները և մարդկային ռեզերվները։ Վերջերս ԱՄՆ-ը Թուրքիայի, Իրանի և Պակիստանի հետ այդպիսի համաձայնագրեր ստորագրեց։ Իտալիայի կառավարողները Վաշինգտոնի պահանջով իտալական տերիտորիան տրամադրեցին ամերիկյան ատոմային-ռեակտիվ բազաների տեղավորման համար։

Կախյալ երկրները խճճելով իր ագրեսիվ բլոկների և համաձայնագրերի ցանցով, ԱՄՆ-ը իր կրտսեր պարտնյորներին ստիպում է ուռճացնել ռազմական բյուջեները։ ՆԱՏՕ-ի, ՍԵԱՏՕ-ի և Բաղդադի պակտի երկրների միլիտարիզացիան հանգեցնում է նրանց խաղաղ տնտեսության քայքայմանը, ազգային ռեսուրսների սպառմանը։ Հաշված է, որ Հյուսիս-ատլանտյան բլոկի տասնամյա գոյության ընթացքում նրա մասնակիցների ռազմական ծախսերը կազմել են 500 միլիարդ դոլարից ավելի։

Այն դեպքում, երբ ամերիկյան միլիտարիզմի մարտակառքին գամված երկրների աշխատավորները իրենց ուսերի վրա են կրում սպառազինությունների մրցավազքի ողջ ծանրությունը, դրա շնորհիվ առասպելական չափերով հարստանում են թնդանոթների, հրթիռների, ատոմային և ջրածնային ռում-



բերի ֆաբրիկանտները։ Ռազմական շահույթների առյուծի բաժինը դիզում են ԱՄՆ-ի մոնոպոլիստները։ Բայց քիչ բաժին չի ընկնում նաև նրանց արևմտաեվրոպական կոմպանիոններին։

Ռազմական տեխնիկայի այժմյան վիճակում մարդկությանը առանձնահատուկ ըսպառնալիք է բերում միջուկային զենքի՝ մարդկանց մասսայական կործանման և ոչնչացման զենքի մրցավազքը։ ԱՄՆ-ի և ատլանտյան այլ երկրների միլիտարիստական շրջանները միջուկային զենքի բնագավառում կորցնելով իրենց մոնոպոլիան, տակավին իրենց հույսը դնում են ատոմային ու ջրածնային ռումբերի վրա։ Պենտագոնի (ԱՄՆ-ի ռազմական գերատեսչությունը) պարագլուխները ոչ մի կերպ չեն կարողանում հաշտվել այն բանի հետ, որ ամերիկյան կոնտինենտի անխոցելիության ժամանակները անցել են։ Իսկ նրանք պետք է հասկանան, որ ժամանակակից բալիստիկ հրթիռները, որ ունի Սովետական Միությունը կարող են հասնել ԱՄՆ-ի տերիտորիայի ուզածդ կետին։ Սա նշանակում է, որ ագրեսիա սանձազերծելով, Ամերիկայի Միացյալ Նահանգները իրենց վրա կընդունեն չտեսնված ուժի պատասխան հարվածը։ Անխուսափելի կլի-

նի նաև այն երկրների դրությունը, որոնք թույլ են տվել իրենց մոտ ՆԱՏՕ-ի ռազմական բազաների, հրթիռների արձակման հրապարակների տեղադրում։

Միանգամայն ակնառու է, որ սպառազինությունների մրցավազքը, որին կառչում են Արևմուտքի ագրեսիվ շրջանները, սպառնալիքի տակ է դնում խաղաղությունը և ժողովուրդների անվտանգությունը։ Ատլանտյան գեներալները, նիզակ ճոճելով և Սովետական Միությանը սպառնալով, խաղում են կրակի հետ։

Մեր ժողովուրդը զբաղված է խաղաղ կոմունիստական շինարարությամբ։ Սովետական մարդիկ գիտեն խաղաղ կյանքի արժեքը և սարի պես կանգնած պաշտպանում են խաղաղության գործը։ ՍՄԿՊ XXI համագումարը, հաստատելով յոթնամյա պլանի վեհ նախագծումները, միահամուռ կերպով հավանություն տվեց Սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը։

Զինաթափման ճանապարհին ընկած առաջին քայլը պետք է լինի ամենուրեք և ընդմիշտ ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների արգելումը, մի բան, որ համա-



ռորեն պահանջում է բոլոր երկրների խաղաղասեր հասարակայնությունը։

Ինչպես հայտնի է, Սովետական Միությունը շնորհակալ նախաձեռնություն է ցուցաբերել նաև այս բնագավառում։ Սովետական կառավարությունը մի շարք տարիների ընթացքում ձգտում է ատոմային և ջրածնային զենքի բոլոր տեսակների փորձարկումների դադարեցմանը, որոնք ոչ միայն լուրջ սպառնալիք են մարդկանց առողջությանը, այլև ծառայում են մարդկանց ոչնչացման է՛լ ավելի ուժեղ միջոցների ստեղծմանը։

Միջուկային փորձարկումների անհապաղ դադարեցման մասին սովետական առաջարկություններին ի պատասխան արևմտյան տերությունները սկսեցին մանևրել և առաջին պլանի վրա քաշեցին այդ հարցի վերաբերյալ հնարավոր համաձայնագրի իրականացման նկատմամբ վերահսկողության պրոբլեմը։

Սովետական կողմը բացառիկ տոկունություն և համբերություն ցուցաբերեց 1958 թվականի ամռանը Ժնևում ութ պետությունների տեխնիկական էքսպերտների խորհրդակցությանը՝ ներառյալ ՍՍՌՄ, Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի էքսպերտները։

Խորհրդակցության ընթացքում պարզվեց,

որ արևմտյան տերությունները չեն շտապում համաձայնագիր կնքել։

ԱՄՆ-ի ներկայացուցիչները խոսակցություններ սկսեցին «ստորերկրյա պայթեցումների» մասին, որոնք իբր դժվար է հայտնաբերել և տարբերել երկրաշարժերի ժամանակ տեղի ունեցող ստորերկրյա ցնցումներից։ Իրականում, գիտության և տեխնիկայի ժամանակակից վիճակում կարելի է հայտնաբերել ուզած փոքրիշատե նշանակալի միջուկային պայթյունը, որտեղ էլ որ այն կատարված լինի։

Դրա հետ մեկտեղ արևմտյան ներկայացուցիչները անընդունելի դիրք են բռնել վերահսկողության սիստեմի նկատմամբ և այսպիսով արգելակում են Ժնևի խորհրդակցության աշխատանքներին։

Ինչի՞ է հանգում արևմտյան տերությունների դիրքը։

Նրանք առաջարկում են, որ միջուկային զենքի փորձարկումների դադարեցման մասին համաձայնագրի կատարման նկատմամբ վերահսկողության գլխավոր օրգանում՝ Վերահսկողության հանձնաժողովում, բոլոր որոշումները ընդունվեն ձայների պարզ մեծամասնությամբ։ Պարզ է, որ Սովետական Միությունը չի կարող համաձայնել «վերա-



հսկողության» նման սիստեմի հետ, որի դեպքում մեր տերիտորիայի վրա ազատ կերպով կգործեին արևմտյան երկրների գեներալ շտաբների հետախույզները։ Չէ՞ որ այսպիսի պրոցեդուրայի դեպքում արևմտյան տերությունները կարող էին ուզած պահին մեր վզին փաթաթել ՍՍՌՄ-ի ուզած շրջանը տեսչական խմբեր ուղարկելու մասին որոշումը և միևնույն ժամանակ թույլ չտալ իրենց տերիտորիաները տեսչության ենթարկելու։ Նման պրակտիկան կհանգեցներ օրոշ պետությունների սուվերենության խախտման, կվնասեր նրանց անվտանգությանը։

Արևմտյան տերությունները առաջարկեցին ստեղծել մինչև 180 վերահսկողության պոստեր, որոնք հետևեին միջուկային զենքի փորձարկումների դադարեցման մասին համաձայնագրի կատարմանը։ Ընդսմին ԱՄՆ-ը և Մեծ Բրիտանիան պնդում են, որ ՍՍՌՄ-ի տերիտորիայում գտնվելիք վերահսկողության պոստերը կազմված լինեն բացառապես օտարերկրացիներից։ Այդ պոստերում նրանք չեն ցանկանում թույլ տալ սովետական մասնագետներին։ Պաշտպանելով այս անմիտ առաջարկությունները, արևմտյան պրոպագանդան միանգամայն խեղաթյու-

րում է սովետական կողմի դիրքը և հայտարարում, որ իբր ՍՍՌՄ-ը «ինքնատեսչություն» է պահանջում, այսինքն՝ առաջարկում է վերահսկողության պոստերը կոմպլեկտավորել բացառապես սովետական մասնագետներով։

Իրականում ինչպիսի՞ն է Սովետական Միության դիրքը։

Սովետական կողմը գտնում է, որ Վերահսկողության հանձնաժողովում էական հարցերի վերաբերյալ որոշումները պետք է ընդունվեն ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի միջև պարտադիր կերպով փոխադարձ համաձայնության գալուց հետո։ Իսկ պրոցեդուրային հարցերը կարող են լուծվել հանձնաժողովի ձայների պարզ մեծամասնությամբ։ Ըստ էության առաջարկվում է մի կարգ, նման այն կարգին, որը գոյություն ունի ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդում։ Այսպիսի կարգը վերահսկողության հանձնաժողովում ՍՍՌՄ-ին, Ամերիկայի Միացյալ Նահանգներին և Անգլիային դնում է հավասար դրության մեջ, նա այդ տերություններին պարտադրում է ընդհանուր համաձայնության իրար միջև, փոխհամագործակցության և լիովին բացառում է երկրների մի խմբի նկատմամբ մյուսի թելադրանքը։



Ինչ վերաբերում է վերահսկողության պոստերի կազմին, ապա ՍՍՌՄ կառավարությունը առաջարկում է, որ այդ պոստերը կազմված լինեն ինչպես որ այն երկրի մասնագետներից, որտեղ գտնվում է վերահսկողության պոստը, այնպես էլ օտարերկրյա մասնագետներից։ Նախատեսվում է, որ օտարեկրյա մասնագետները անմիջական մասնակցություն են ունենալու համապատասխան գիտական պրիբորների և սարքավորումների ցուցմունքների վերլուծությանը, տվյալների մշակմանը, նրանք կարող են նաև ղեկավար պաշտոններ գրավել վերահսկողության պոստերում։

Միանգամայն ակնառու է, որ սովետական առաջարկները խելացի և տրամաբանական են, որ դրանք համապատասխանում են էֆեկտիվ և օբյեկտիվ վերահսկողության սիստեմի նպատակներին։

Արևմտյան տերությունների կողմից վերահսկողության բնագավառում իրենց բռնացումը հաստատելու փորձերը արտահայտվում են Վերահսկողության հանձնաժողովի ադմինիստրատորին անսահման, միանձնյա իշխանությամբ օժտելու նրանց առաջարկի մեջ։ Ըստ արևմտյան ներկայացուցիչների մտադրության, ադմինիստրատորը կարող է ա-

ռանց վերահսկողության հանձնաժողովի գիտության ու համաձայնության երկրի ցանկացած շրջանը տեսչական խմբեր ուղարկել, եթե, նրա կարծիքով, միջուկային փորձարկումների դադարեցման վերաբերյալ համաձայնագրի խախտման նշաններ են երևացել։ Բայց չէ՞ որ կարելի է այդ կարգի ցանկացած կասկածը հորինել։ Այսպիսով, հնարավորություններ կստեղծվեին կամայական գործողությունների համար՝ ի վնաս այս կամ այն երկրի անվտանգության շահերի։ Արժե հիշեցնել, որ իր ժամանակին տեխնիկական էքսպերտների Ժնևի խորհրդակցությունը ևս արտահայտվեց միայն վերահսկիչ օրգանի կողմից տեսչական խմբեր ուղարկելու օգտին, և ոչ թե մի ադմինիստրատորի միանձնյա որոշմամբ։ Այս դիրքին է կանգնած նաև Սովետական Միությունը։

Միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու հարցի վերաբերյալ երեք տերությունների բանակցությունները Ժնևում վերսկսելու կապակցությամբ ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրությունը 1959 թվականի ապրիլի 13-ին հրապարակեց մի հայտարարություն, որի մեջ ցույց են տրված Ժնևի խորհրդակցության մասնակիցների դիրքերը և այդ հարցի շուրջը գոյություն ու-



նեցող տարաձայնությունները։ Այդ հայտարարության մեջ արդարացի եզրակացություն է արվում, որ «արևմտյան տերությունները շահագրգռություն են ցուցաբերում ոչ թե ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու մասին համաձայնագրի կատարումը ապահովելու համար միջազգային վերահսկողություն սահմանելու նպատակով, այլ Սովետական Միության մասին հետախուզական տվյալներ ստանալու նկատառումով»։ «Բայց մի՞թե,— ասվում է հայտարարության մեջ,— այս խնդիրն է դրվում Ժնևի խորհրդակցության առջև։ Արևմտյան տերությունները հայտարարում են, որ իրենց առաջարկությունները մտցնելով, նրանք իրենց տերիտորիաներում նույնպիսի վերահսկողության սիստեմ ստեղծելու հնարավորություն են թույլ տալիս, ինչպես և այն սիստեմը, որ պետք է ստեղծվի ՍՍՌՄ տերիտորիայում։ Բայց Սովետական Միությանը ամենևին պետք չէ այդպիսի վերահսկողությունը, որը ըստ էության հետախուզություն է, այնքան որքան Սովետական պետությունը չունի ագրեսիվ մտադրություններ և նա որևէ մեկի վրա հարձակվելու չի պատրաստվում»։

---

# Ի՞ՆՉ Է ՏԱԼԻՍ ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՐՈՊԵՆ

(Թվեր և փաստեր)

★ *ՍՍՌՄ-ում 1958 թվականին ամեն մի րոպեում ձուլվել է ավելի քան 106 տոննա պողպատ։ Դա բավական կլինի 118 հատ «Մոսկվիչ» մարդատար ավտոմեքենա արտադրելու համար։ Յոթ տարուց հետո Սովետական Միությունում պողպատի ձուլումը մեկ րոպեում հասնելու է մինչև 170—175 տոննայի։ Այդ քանակի մետաղից կարելի է պատրաստել ավելի քան 300 խառատա-պտուտակային դազգահներ։*

★ *Նիժնի—Տագիլի մետալուրգիական կոմբինատի առաջին մարտենյան ցեխի իններորդ վառարանի պողպատ ձուլողները ամեն մի լիցքի ժամանակ խնայում են 5 րոպե։ Դա նրանց հնարավորություն է տալիս յուրաքանչյուր ամիս պլանից դուրս ձուլել 250 տոննա մետաղ։*

★ *Ստալինգրադի «Կրասնիյ Օկտյաբր» մետալուրգիական գործարանում ձուլման ժամանակ տնտեսած յուրաքանչյուր րոպեն ձուլման ինքնարժեքը իջեցնում է 10 ռուբլով։*

★ *Արտադրության մեջ երբեմն ոչ միայն րոպեները, այլև վայրկյանները կարևոր նշանակություն ունեն։*



*Նույն այդ «Կրասնիյ Օկտյաբր» գործարանում լցնող մեքենայի մեքենավար Ի. Պոպովը ամեն անգամ կաղապարի լցման տևողությունը 60—70 վայրկյանի փոխարեն կրճատել հասցրել է մինչև 51 վայրկյանի։ Երբ ընկ. Պոպովի փորձը լայն տարածում ստացավ ցեխում, կաղապարի լցման ժամկետը միջին հաշվով կրճատվեց 7 վայրկյանով։ Խնայված այդ ժամանակամիջոցը ցեխի մեքենավարներին հնարավորություն տվեցին յուրաքանչյուր օր խնայել այնքան էլեկտրաէներգիա, որը անհրաժեշտ է բովախառնուրդ մետաղով մի վառարան լրիվ բառնալու համար։*

★ *Աշխատանքի մեջ կոմունիստական բարձր գիտակցականությունը, նյութերի ու միջոցների ծախսման ուղղությամբ հոգատար վերաբերմունքը սովետական միլիոնավոր մարդկանց բարձր հատկանիշն է։ «Մոսկաբել» գործարանի գլանող Ն. Սմիրնովը «Կոմսոմոլսկայա Պրավդա» թերթում պատմում է թե ցեխի բանվորները ինչպես են պայքարում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Նա գրում է՝ «Հիշում եմ մի այսպիսի դեպք։ Հերթափոխության ամենաեռուն աշխատանքի ժամանակ շարքից դուրս եկավ կցորդիչը։ Որպես կանոն այդ թերությունը վերացնելու համար պահանջվեց 30 րոպե։ Դազգահը դեռևս նոր էր կանգ առել, իսկ գլանող Ա. Կոբոտինը արդեն վազում էր նոր կցորդիչ բերելու, մեկ ուրիշը մետաղաճոպանները, իսկ երրորդը դուրս բերեց մաշված կցորդիչը»։*

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Յոթնամյա պլանը կարևորագույն քայլ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ, *Երկեր, հատոր 25, էջ 407—468, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարում, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

## 2. Աշխատել և ապրել կոմունիստաբար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեծ նախաձեռնություն (բանվորների հերոսության մասին թիկունքում: «Կոմունիստական



շաբաթօրյակների» *առթիվ), Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մոսկվա—Կազան երկաթուղու առաջին շաբաթօրյակից դեպի Համառուսաստանյան մայիսմեկյան շաբաթօրյակը, *Երկեր, հատոր 31, էջ 138—140, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Յոթնամյա պլանը և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի կատարումը, ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, էջ 82—89, *Հայպետհրատ, 1959։*

Փառապանծ քառասնամյակը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի մայիսի 10-ի առաջնորդողը։*

Կոմունիստական աշխատանքի մեջ դրսևորվում են սովետական մարդու բարոյական վեհ գծերը, *նյութեր կոմունիստաբար աշխատելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մայիսի 10-ի համարում:*

## 3. Բարձր ցուցանիշներով կատարենք սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպես կազմակերպել մրցությունը, *Երկեր, հատոր 26, էջ 493—503, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարում, Հայպետհրատ, 1959։*

եղբայրական ռեսպուբլիկաների մրցությունը, *«Ս. Հ.»-ի ապրիլի 30-ի առաջնորդողը։*

Տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար, *նյութեր ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մայիսի 6-ի համարում։*

## 4. Դեպի Սովետական Հայաստանի 40-ամյակը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— *Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություն Հայկական ՍՍՌ-ի 40-ամյակի տոնակատարությանը նախապատրաստվելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 29-ի համարում։*

## 5. Այգիների և ցանքերի մշակությունը կատարենք սեղմ ժամկետում և ագրոտեխնիկական բարձր մակարդակով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, էջ 38—45, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից,



*տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Մեծ գործերի առաջին գարունը *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 3-րդ համարի առաջնորդողը։*

## 6. Ավելի բարելավել անասունների խնամքը արոտային շրջանում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության աշխատողների պատվի գործը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի ապրիլի 30-ի համարում։*

Ի. ՄՈՒՍՏԱՖԱԵՎ— Մեր ուժը եղբայրական բարեկամությունն է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի ապրիլի 30-ի համարում։*

Հայաստանի և Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական մրցությունը, *նյութեր գյուղատնտեսության աշխատողների առաջավորների փորձից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի ապրիլի 30-ի համարում։*

Անասնաբուծության առաջավորների փորձից, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 2-րդ համարում, էջ 3—9։*

---



## ՄԵՔԵՆԱՅԱՑՎԱԾ ՊԱՀԵՍՏ ՀԵՂՈՒԿ ԱԶՈՏԱՅԻՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՄԱՐ

*Պարարտանյութերի և ագրոհողագիտական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը ՌՍՖՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գյուղական շինարարության նախագծման ինստիտուտի հետ միասին, նախագծել և կառուցել է մեքենայացման ենթարկված մի պահեստ հեղուկ ազոտային պարարտանյութերի համար։ Պահեստը նախատեսված է գործարաններից ստացվող և կոլտնտեսություններին տրվող ամոնիակային ջրերի պահպանման համար, որը գյուղատնտեսության մեջ օգտագործվելու է առաջին հերթին հեռաշար կուլտուրաների (բամբակի, ճակնդեղի, եգիպտացորենի, կարտոֆիլի), ինչպես նաև հացահատիկային կուլտուրաների ցրտահերկի սնուցման համար։ Պահեստի ընդհանուր տարողությունը հավասար է 300 խորանարդ մետրի, իսկ տարեկան թողարկության կարողությունը 600—800 տոննայի։ Այդպիսով, այդ քանակությամբ ազոտային պարարտանյութերով հնարավոր է 2—3 հազար հեկտար ցանքերի սնուցում կատարել։*



*Պահեստը բաղկացած է երեք ցիստերնից՝ յուրաքանչյուրը 50 տոննա տարողությամբ, որոնք դասավորված են երկաթգծի մոտ և փոքր տարողությամբ յոթ ցիստերներից՝ որոնք գտնվում են երկաթուղուց հեռու կոլտնտեսություններում։*

*Երկաթուղային ցիստերներից ամոնիակի ջուրը կենտրոնական պոմպի օգնությամբ մղվում է հորիզոնական դիրքով գտնվող ցիստերների մեջ, որտեղից ինքնահոսով, կամ այդ նույն պոմպի միջոցով լցվում է ավտոցիստերների մեջ։ Ավտոցիստերներով ամոնիակի ջուրը տեղափոխվում է կոլտնտեսությունների պահեստները կամ անմիջապես դաշտերը՝ սնուցում կատարող մեքենաները լցնելու համար։*

*Պահեստը սարքավորված է ԲԿՖ—2 ձեռքի պոմպով՝ խողովակաշարը ամոնիակի ջրով նախապես լցնելու համար և ջրաչափով, որը հաշվում է բաց թողնվող պարարտանյութի քանակը։ Խողովակների զուգահեռ սիստեմը, որը պահեստի ցիստերները միացնում է պոմպերի հետ, թույլ է տալիս պարարտանյութը մեկ ցիստերնից լցնել մյուսը։ Դա հնարավորություն է ստեղծում առանց դադարի վերանորոգել ամբողջ պահեստի ցիստերները։*

*Պահեստի փորձարկումները ցույց են տվել նրա բարձր արտադրողականությունը. 5 կիլովատ հզորություն ունեցող շարժիչների օգնությամբ ցիստերների դատարկումը տևել է 1—1,5 ժամ։*

---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

# СОДЕРЖАНИЕ



**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 10** **1959 г.**

*ՎՖ 04014* *Պատվեր 331* *Տիրաժ 9130*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.*